*Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք*

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 11—12

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
1944

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 11—12

«Սովետական Հայաստան» բերքի
հրատարակչություն
1944

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



# ԿԱԶՄԱԿԵՐՊԵԼ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԸ ՈՐՊԵՍ ՀԱՄԱԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԳՈՐԾ

Բերքահավաքը սեզոնային գործ է և նա սպասել չի սիրում: Հավաքեցիր ժամանակին՝ շահեցիր, ուշացար բերքահավաքի գործում՝ տանուլ տվիր:

Ի. ՍՏԱԼԻՆ

*Գյուղատնտեսության մեջ վրա է հասել վճռական ժամանակաշրջանը՝ ամենալարված աշխատանքների շրջանը: Պետք է հավաքել բերքը, կատարել գյուղատնտեսական մթերքների մթերման պլանը և միաժամանակ կատարել աշնանացանը, սկսել ցրտահերկը: Օգոստոս—սեպտեմբեր ամիսներին ընկնում է գյուղատնտեսության մեջ ներդրվող տարեկան ամբողջ աշխատանքի մի զգալի մասը:*

*Այս ամառ ծավալի տեսակետից ավելի շատ աշխատանք պիտի կատարվի, քան անց-*

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



# ԿԱԶՄԱԿԵՐՊԵԼ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԸ ՈՐՊԵՍ ՀԱՄԱԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԳՈՐԾ

Բերքահավաքը սեզոնային գործ է և նա սպասել չի սիրում: Հավաքեցիր ժամանակին՝ շահեցիր, ուշացար բերքահավաքի գործում՝ տանուլ տվիր:

Ի. ՍՏԱԼԻՆ

Գյուղատնտեսության մեջ վրա է հասել վճռական ժամանակաշրջանը՝ ամենալարված աշխատանքների շրջանը: Պետք է հավաքել բերքը, կատարել գյուղատնտեսական մթերքների մթերման պլանը և միաժամանակ կատարել աշնանացանը, սկսել ցրտահերկը: Օգոստոս—սեպտեմբեր ամիսներին ընկնում է գյուղատնտեսության մեջ ներդրվող տարեկան ամբողջ աշխատանքի մի զգալի մասը:

Այս ամառ ծավալի տեսակետից ավելի շատ աշխատանք պիտի կատարվի, քան ան-

ցյալ տարի: Բերքի տարածությունը խիստ աճել է և ամենուրեք պետք է հավաքվի ավելի բարձր բերք: Այս աշխատանքը ժամանակին և անկորուստ գլուխ բերել կարելի է միայն օգտագործելով բոլոր առկա աշխատանքային ռեսուրսները և նյութական միջոցները: Հենց այս պատճառով ՍՍՌՄ Ժողկոմսովետը և ՀամԿ(բ)Պ Կենտկոմը այս տարվա բերքահավաքը և գյուղատնտեսական մթերքների մթերումը համարում են կարևորագույն համաժողովրդական գործ: Ի՞նչ է նշանակում այդ՝ կազմակերպական ղեկավարության տեսակետից: Այդ նշանակում է, որ պարտիական կազմակերպությունները պարտավոր են ամենից առաջ ապահովել կոլխոզներում և սովխոզների տերիտորիայում ապրող աշխատունակ ամբողջ բնակչության՝ կոլխոզնիկների և նրանց ընտանիքի անդամների, սովխոզների բանվորների, ծառայողների և նրանց ընտանիքի անդամների, ինչպես նաև արդյունաբերության մեջ ու տրանսպորտում չզբաղված թե՛ մեծահասակ և թե՛ 14 տարեկան ու ավելի մեծ դեռահասակների թվին պատկանող ոչ կոլխոզնիկ աշխատունակ մյուս բնակչության



մասնակցությունը բերքահավաքի աշխատանքին:

1944 թ. բերքահավաքի ժամանակաշրջանում պարտադիր կերպով աշխատանքի պետք է դուրս գան աշխատունակ բոլոր կոլխոզնիկները, այդ թվում նաև այն կոլխոզնիկները, որոնք արդեն ունեն աշխօրերի մինիմում:

Բոլոր նրանք, ովքեր բերքահավաքի ժամանակ կարող են օգտակար լինել, պետք է լինեն դաշտում:

Սակայն այս պայմաններում ևս գյուղը բանվորական ուժի պահանջ է զգալու: Օգնության պետք է հասնի քաղաքի բնակչությունը: Նա լուրջ դեր կարող է խաղալ բերքահավաքի ժամանակ այն դեպքում, եթե մոբիլիզացված յուրաքանչյուր մեծահասակ կատարի իր համար օրենքով սահմանված առնվազն 40—50 աշխօր, իսկ ամեն մի դպրոցական՝ առնվազն 20—30 աշխօր:

Բացի այդ, ձեռնարկություններից պետք է ուղարկել որակյալ բանվորներ գյուղատնտեսական մեքենաները սպասարկելու համար: ՍՍՌՄ Ժողկոմսովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշումը միջոցներ է նախատեսել բերքահավաքին լրացուցիչ

նյութական և լծկան ուժ մասնակից դարձնելու համար: Արդյունաբերական ձեռնարկություններին, քաղաքային կազմակերպություններին առաջարկվել է առանձնացնել ավտոտրանսպորտ, ձիեր, ավելորդ սարքավորում, պահեստի մասեր, նյութեր և գործիքներ:

Այն ամենը, ինչ կարելի է ուղարկել գյուղատնտեսական աշխատանքների համար, առանց վնաս հասցնելու պաշտպանական պատվերներին, այս թեժ օրերին պետք է լինի գյուղում, որտեղ այժմ որոշվում է մեր պետության համար կարևորագույն ռազմա-տնտեսական խնդիրը:

Ամեն մի մարզ ունի անհրաժեշտ ուժեր և ռեսուրսներ բերքահավաքը և մթերումները հաջողությամբ գլուխ բերելու համար: Ամբողջ խնդիրն այն է, թե այդ ռեսուրսները ո՛րքան հմտորեն կմոբիլիզացվեն և կօգտագործվեն:

Պարտիական կազմակերպությունները մեծ պատասխանատվություն են կրում գյուղատնտեսության վիճակի համար: Պետք է հասնել այն բանին, որպեսզի սովետական և հողային օրգաններն աշխատեն ավելի լավ, ավելի օպերատիվորեն, բայց ընդ որին պետք է իրեն պարզ հաշիվ



տալ, որ հաջողության կարելի է հասնել միայն այն դեպքում, եթե պարտկազմակերպությունները իրենք ընդհուպ կզբաղվեն գյուղատնտեսական գործերով իրենց բոլոր մանրուքներով հանդերձ: Պարտիան իր կազմակերպություններից միշտ պահանջել է հենց այդպիսի վերաբերմունք դեպի գյուղատնտեսությունը: Այդ պահանջը ավելի ևս մեծ նշանակություն է ստանում այժմ, երբ բերքի համար մղվող պայքարը դառնում է համաժողովրդական գործ:

Պարտիայի մարզային շատ կոմիտեներ վերջերս մի փոքր բարելավել են գյուղատնտեսության նկատմամբ իրենց ղեկավարությունը, և այդ մասնավորապես արտահայտվել է նրանով, որ գարնանացանը ավելի հաջող անցավ, քան անցյալ տարի, իսկ դաշտային աշխատանքների որակը բարելավվեց: Փորձը ցույց է տալիս, որ սովորաբար հաջողություն ձեռք բերել հաջողվում է այնտեղ, որտեղ մարզային կոմիտեն բոլոր ուժերը կենտրոնացնում է հանգուցային, վճռական հարցերի վրա, այնտեղ, որտեղ գյուղատնտեսության գործերի վրա ունեցած ազդեցությունը չի սահմանափակվում որոշումներ ընդունե-

լով, այլ իրագործվում է ամեն օր, կազմակերպչական օպերատիվ աշխատանքի միջոցով։ Իսկ եթե մարզկոմը անհրաժեշտ օպերատիվություն չի ցուցաբերում գյուղատնտեսության անհետաձգելի հարցերը լուծելու գործում, շրջանների, կոլխոզների, ՄՏԿ-ների և սովխոզների կենդանի ղեկավարության փոխարեն զբաղվում է զանազան տեսակ նիստերով ու խորհրդակցություններով, գյուղատնտեսության մեջ գործերը չեն բարելավվում։

Անհրաժեշտ է, որպեսզի պարտիայի բոլոր մարզային կոմիտեները միշտ կատարելագործեն գյուղատնտեսությունը ղեկավարելու իրենց մեթոդները, զբաղվեն գյուղատնտեսությամբ ոչ թե դեպքից դեպք, ինչպես այդ տեղի ունի առանձին մարզերում, այլ կենտրոնացնեն իրենց բոլոր ուժերը գյուղատնտեսության մեջ եղած խոշոր թերությունները վերացնելու վրա, այն հաշվով, որպեսզի գործը արմատապես բարելավվեն կոլխոզներում, ՄՏԿ-ներում և սովխոզներում։

Լարված գյուղատնտեսական աշխատանքների օրերին առանձնապես կարևոր է, որպեսզի ամեն մի մարզկոմ, շրջկոմ դառնա մարտական օպերատիվ շտաբ, որը կարող



է կենտրոնանալ այն ամենի վրա, ինչ գլխավորն է և ակտիվորեն ազդել գործերի դրության վրա։

Անցյալ տարվա բերքահավաքի լուրջ թերություններից մեկն այն էր, որ ղեկավարները չէին կարողանում հենց առաջին իսկ օրերից գործի դնել իրենց տրամադրության տակ եղած միջոցները։ Շատ անգամ այսպես էին վարվում. նախ գործի էին դնում պարզ մեքենաները, ապա կոմբայնները և միայն մի ամիս կամ ամիս ու կես հետո, երբ պարզվում էր, որ միայն մեքենաներով բերքը հավաքել չի հաջողվի, բերքահավաքին մասնակից էին դարձնում հնձվորներին։ Այս տարվա գարնանն էլ մի քանի շրջաններում դեպքեր են եղել, երբ առաջին տաս-տասնհինգ օրվա ընթացքում ձիերը պարապ էին մնում, որովհետև ղեկավարները հույս էին դնում միայն տրակտորների վրա։

Հացահատիկի բերքահավաքը չձգձգելու համար պետք է մի անգամից բերքահավաքի մեջ ներգրավել կոմբայնները և կոլխոզներում, ՄՏԿ-ներում ու սովխոզներում եղած բերքահավաքի բոլոր մյուս միջոցները։ Այն ղեկավարը, որը բերքահավաքի ժամանակ օգտագործելի ուժերի մի մասը

թեկուզ ժամանակավոր անգործության կմատնի, աններելի սխալ թույլ կտա: Ղեկավարներին առաջադրվում է պարտադիր պահանջ՝ հասնել այն բանին, որպեսզի բերքահավաքի սկզբից մինչև վերջը առավելագույն չափով և միաժամանակ գործադրվեն բոլոր միջոցները: Բերքահավաքը պետք է կատարել լայն ճակատով, դրանում է հաջողության պայմաններից մեկը:

Սակայն ո՞վ հայտնի չէ, որ անհրաժեշտ ուժերի ու միջոցների առկայությունը դեռ հաղթանակ չի նշանակում: Ամենից առաջ վճռելու է աշխատանքի արտադրողականության մակարդակը: Եվ ահա աշխատանքի բարձր արտադրողականության համար մղվող պայքարը այժմ պետք է դառնա բերքահավաքի ղեկավարման կենտրոնական խնդիրը: Խոսքը այն մասին է, որպեսզի վճռականորեն բարելավվի տրակտորային պարկի շահագործումը և ճիշտ կերպով կազմակերպվի բոլոր կոլտնտեսների աշխատանքը:

Չնայած ՄՏԿ-ների աշխատանքի որոշ բարելավմանը, այս տարի այնուամենայնիվ շատ ՄՏԿ-ներում կազմակերպչական, տեխնիկական կարգի զանազան պատճառներով տրակտորների արտադրողականությունը



շատ չնչին է և միաժամանակ քիչ չեն տրակտորային այն բրիգադները, որոնք աշխատելով նույն պայմաններում, ձեռք են բերում մեծ արդյունքներ: Վերցնենք մի քանի ուսանելի թվեր Ռյազանի մարզի գարնանացանի աշխատանքների պրակտիկայից: Պիրոժկովի տրակտորային բրիգադը իր տրամադրության տակ ունենալով 13 պայմանական տրակտոր, առ 10 հունիսի մշակել էր 7 հազար հեկտար: Նույն ժամանակամիջոցում Միխայլովի մի ամբողջ ՄՏԿ-ն, որն ունի 52 տրակտոր, մշակել էր 4 հազար հեկտարից մի փոքր ավելի, Պեղնովի ՄՏԿ-ը, որն ունի 48 տրակտոր՝ 3 հազար հեկտար, Կալինինի ՄՏԿ-ը 31 տրակտորով՝ 3 հազար հեկտար և այլն: Այլ խոսքով մարզում եղած 83 ՄՏԿ-ից միայն 25 ՄՏԿ ավելի մեծ արտադրանք են տվել, քան Պիրոժկովի բրիգադը, իսկ մնացած 58 ՄՏԿ-ից յուրաքանչյուրը ավելի քիչ է մշակել, քան կարողացել է մշակել մեկ բրիգադը: Կարո՞ղ է արդյոք ավելի ցայտուն ապացույց լինել, թե ինչպիսի հսկայական ռեզերվներ ունեն իրենց տրամադրության տակ մեր ՄՏԿ-ները:

Այս ռեզերվները գործի դնել կարելի է, եթե տրակտորային պարկի շահագործման

հարցերը կանգնած լինեն պարտիական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում: Այնպիսի հարցերով, ինչպես անհրաժեշտ գործիքների, պահեստի մասերի մատակարարումը, շրջագայող մեխանիկների աշխատանքի կարգավորումը, տրակտորիստների սննդի կազմակերպումը, պետք է զբաղվեն ամենապատասխանատու պարտիական աշխատողները:

Առանձնապես կարևոր է համապատասխան աշխատանք տանել տրակտորիստների հետ, խրախուսել լավագույն բրիգադաները, լայն կերպով ժողովրդականացնել նրանց փորձը: Ահա, օրինակ, Ռյազանի մարզկոմը կազմակերպել էր տրակտորային բրիգադաների մրցություն: Մարզային թերթում տպագրվում էին առաջավոր բրիգադիրների ազգանունները: Սկզբում այդ ցուցակը շատ մեծ չէր՝ Գարմաշ, Կոստրիկինա, և մի քանի մարդ: Բայց ցանքային կամպանիայի վերջում մարզում առաջավոր բրիգադաների թիվը հասավ 63-ի: Այդ բրիգադաները, որոնք իրենց կազմում ունեին տրակտորների 6,5 տոկոսը, կատարել են այնպիսի ծավալի աշխատանք, որը կազմում է մարզում կատարված ամբողջ աշխատանքի 22,3 տոկոսը: Անտարակույս



ճիշտ կազմակերպված մրցությունը մարզկոմի մյուս միջոցառումների հետ միասին, կարևոր դեր խաղաց տրակտորային ամբողջ պարկի արտադրողականությունը բարձրացնելու գործում:

Պարտկազմակերպության համար պակաս նշանակություն չունի նաև ձեռքով աշխատող կոլխոզնիկների աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու համար մղվող պայքարը: Այստեղ արդեն չի կարելի պատճառ բռնել մեխանիզմները սարքին չլինելը կամ այլ օբյեկտիվ հանգամանքներ: Ամեն ինչ կախված է աշխատանքի ճիշտ կազմակերպումից: Շրջանային մի քանի աշխատողներ շատ անգամ իրենց խնդիրը սահմանափակում են նրանով, որպեսզի ապահովեն բոլոր կոլխոզնիկների դաշտ դուրս գալը: Անկասկած դա կարևոր գործ է, բայց ավելի ևս կարևոր է աշխատանքը կազմակերպել այնպես, որպեսզի ոչ մի ժամ իզուր չանցնի, որպեսզի մարդիկ շահագրգռված լինեն որքան կարելի է շատ արտադրել:

Այստեղ կա միայն մի ուղի, որը փորձված է կոլխոզային շինարարության պրակտիկայում,— դա խմբակային (օղակային) և անհատական գործավարձի ուղին է: Որ-

քան ավելի է անհատականացված կոլխոզնիկների աշխատանքը, որքան նյութապես ավելի է խրախուսված, այնքան ավելի նա արտադրողական է:

Մի քանի մարդկոմներ սկսել են այժմ ավելի լայն կերպով արմատացնել գործավարձը, դրանում տեսնելով իրենց կազմակերպական ղեկավարության կարևորագույն խնդիրը, մի գործոն միջոց, որը կօգնի բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը գյուղատնտեսության մեջ:

Գործավարձը վերացնում է դիմազրկությունը, հնարավորություն է տալիս կոլխոզնիկին ծավալվել: Կարելի է վերցնել մի պարզ օրինակ: Բրիգադայում կա 10 հրնձվոր: Նրանք դաշտ են դուրս գալիս զանազան ժամանակ՝ մեկը շուտ, մյուսը՝ ուշ: Աշխատելով խմբովին, նրանք սովորաբար հունձը չեն սկսում, մինչև որ բոլորը հավաքվեն: Նրանք աշխատանքի են անցնում բոլորը միասին: Բայց ոմանք լավ են հրնձում, իսկ մյուսները դեռ նոր են ձեռքները դերանդի վերցրել: Փորձված հնձվորը հնարավորություն կունենա՞ արդյոք արագ, հարկ եղած ձևով աշխատել: Ի հարկե ոչ: Լավ կոլխոզնիկը շահագրգռված կլինի՞ արագ աշխատել, եթե նա գիտե, որ մին-



նույնն է՝ վարձատրությունը հավասար կրաժանվի 10 հնձվորի միջև: Նույնպես ոչ:

Իսկ եթե ամեն մի հնձվորի ցույց տրվի առանձին տեղամաս, նրան տրվի աշխատանքի ժամկետը, հայտնվի, թե ո՛րքան կարող է վաստակել, ապա նա խորը կերպով շահագրգռված կլինի ավելի արագ հնձել: Կոլխոզներում այնիվ, լավ աշխատողները կազմում են մեծամասնություն: Այս պատճառով անհատական գործավարձի դեպքում կոլխոզնիկների մեծ մասը նորման կգերակատարի, ուրեմն և հունձը մի քանի անգամ ավելի արագ կընթանա: Գործավարձի դեպքում մրցությունն էլ իսկական կլինի, որովհետև մարդիկ կկարողանան տեսնել իրենց աշխատանքի արդյունքը, ավելի հեշտ կլինի առաջավորներին տարբերել և խրախուսել, ետ մնացողներին ուղղել:

Կոլխոզնիկներին առաջադրանք պետք է տալ ոչ միայն մեկ օրվա համար և ոչ մեկ օրվա նորմայի չափ, այլ մի քանի օրվա համար: Ամենօրյա առաջադրանքի դեպքում, որը սահմանափակված է նորմայով, կոլխոզնիկը հնարավորություն չունի ծավալվելու: Մի քանի օրվա առաջադրանքի դեպքում նա ավելի մեծ հնարավորություն

ունի պլանաչափորեն ղեկավարելու նորման:
Ամբողջին աշխատելիս լոդըրը թաքնվում է բոլոր կոլխոզնիկների թիկունքում: Իսկ գործավարձի դեպքում, եթե լոդըրը հնձի կամ խուրձ կապելու ժամանակ ետ մնա, ապա նրա վրա կհարձակվի ամբողջ օղակը: Ամբողջ օղակը շահագրգռված է հացահատիկն ավելի լավ հավաքել, ստանալ ավելի շատ լրացուցիչ վճար: Եվ եթե լոդըրի պատճառով նրա տեղամասում հացահատիկը կծղի, ապա կոլխոզնիկները այդ նրան երբեք չեն ների, նրանք կստիպեն նրան ինչպես հարկն է աշխատել:

Այսպիսով գործավարձը հնարավորություն է տալիս ամրապնդել աշխատանքային կարգապահությունը կոլխոզներում, բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը. անհատական գործավարձի դեպքում պետության շահերը, կոլխոզների հասարակական շահերը ամենից ճիշտ են զուգորդվում կոլխոզնիկների անձնական շահերի հետ:

Գործավարձը ամրապնդելու համար բացատրական աշխատանքը պետք է կառուցել այնպիսի կոնկրետ, կենդանի փաստերի վրա, ինչպես այդ անում է Կուրսկի մարզ-



կոմը: Գարնանը Կուրսկի մարզում գործավարձը կիրառվել է շատ աշխատանքներում և լավ արդյունք է տվել: Մասնավորապես սրա շնորհիվ հաջողվել է կոլխոզնիկներին շահագրգռել, որպեսզի նրանք գյուղատնտեսական աշխատանքների ժամանակ օգտագործեն կովերը, որը զգալի չափով վճռեց ցանքի հաջողությունը:

Խուրձ դնելիս, կալսելիս, բերքահավաքի մեքենաներով, շարքացաններով աշխատելիս, կարելի է կիրառել խմբակային գործավարձ, անպայման առաջադրանքը հանձնելով կոլխոզնիկներին, խստիվ հաշվի առնելով նրանց աշխատանքը և այն վարձատրելով արտադրանքի համաձայն:

Ի հարկե ամեն մի մարզում կան յուրահատուկ պայմաններ, և նույնիսկ առանձին շրջաններում երբեմն պետք է լինում աշխատանքի կազմակերպման հարցերը լուծել տարբեր ձևով: Բայց առանց բացառության բոլոր մարզերի համար պետք է հասնել այն բանին, որպեսզի դաշտ դուրս եկած ամեն մի աշխատող աշխատի առավելագույն լարվածությամբ և արտադրողականությամբ, որպեսզի շրջանային և մարզային ղեկավարները անձամբ խորամուխ լինեն աշխատանքի կազմակերպման հարցերի մեջ, նը-

չեն թերությունները, այլ թերություննե-
րը ուղղելն և արագորեն տարածելն դրական
փորձը: Գյուղատնտեսական աշխատանքնե-
րում ղեկավարության վերացումը կօգնի
ավելի լավ կազմակերպել բերքի խստա-
գույն հաշվառումը և պահպանումը բերքա-
հավաքի, կալսման և փոխադրումների ժա-
մանակ, խուսափել բերքի կորստից ու փչա-
ցումից, ավելի հաջողությամբ վճռական
պայքար մղել հացահատիկի և գյուղատըն-
տեսական այլ մթերքների վատնման և հա-
փշտակման դեմ: Բերքը պաշտպանելու
հոգսը պարտականությունների կա-
րևորագույն պարտականությունն է:

Բերքահավաքի աշխատանքները,—դրանք
վերջին վճռական մարտն են բերքի համար:
Եվ խոսք, եթե նկատի ունենանք աշխա-
տանքներին մասնակցող մարդկանց ու
տեխնիկայի քանակը, բերքահավաքի ժա-
մանակ պահանջվող ուժերի լարումը, ապա
բերքահավաքը հանդիսանում է յուրահա-
տուկ ճակատամարտ: Եվ ինչպես որ ամեն
մի ճակատամարտում մարտիկների բարձր
բարոյական ոգին վերածվում է մարտի ել-
քը որոշող նյութական ուժի, այնպես էլ
կոլխոզնիկների բարոյական ոգուց շատ
բանով է կախված բերքահավաքի և հացա-



հատիկի մթերման հաջողությունը: Ոգևոր-
ված, հաղթանակի հասնելու ցանկությամբ
վառված մարդիկ ընդունակ են հրաշքներ
գործել, նրանց սարսափելի չէ ոչ մի խո-
չընդոտ: Կալինինի մարզի ազատագրված
շրջանների կոլխոզնիկները կանգ չառան
լծկանի համարյա կատարյալ բացակայու-
թյան առաջ, որը ոչնչացրել էին գերմանա-
կան օկուպանտները. Նրանք 40 հազար
հեկտար բահով փորեցին և ցանեցին: Սմո-
լենսկի ազատագրված շրջաններում կանայք
ու փոքրահասակները ստիպված էին իրենց
ուսերով կրել հարյուրավոր փութ սերմացու
20—30 կիլոմետր տարածության վրա և
այնուամենայնիվ նրանք կատարեցին գար-
նանացանի պլանը: Հերոսական աշխատան-
քի օրինակներ կարելի է բերել մեր ամեն
մի մարզից և այդ մի ավելորդ անգամ ա-
սում է այն մասին, որ չկա այնպիսի դըժ-
վարություն, որ հնարավոր չլինի հաղթա-
հարել, եթե ոգևորենք մարդկանց և կազ-
մակերպենք նրանց աշխատանքը:

Պարտիական ղեկավարները պետք է կա-
րողանան գտնել լավագույն մարդկանց,
նրանց ոտքի հանել, մասսաների մեջ ցան-
կություն զարգացնել առաջավորներին նը-
մանվելու: Պետք է ավելի լավ օգտագոր-

ծել մեր գյուղի վճռական ուժը՝ երիտա-
սարդությունը, կոմերիտականներին, որոնք
ընդունակ են հրաշքներ գործել: Մենք շատ
անգամ շատ բան ենք կորցնում մարդկանց
ընդհանուր մոտեցում ցույց տալով, դրա-
կան փորձը ժողովրդականացնել չկարողա-
նալու պատճառով: Ամենահետամնաց ձեռ-
ջանում կան ոչ վատ կոլխոզներ, ամենա-
հետամնաց կոլխոզում կան հիանալի շատ
կոլխոզնիկներ, որոնք սրտանց ցավում են
գործի համար:

Երբ շրջանային ղեկավարը այդ մարդ-
կանց չի նկատում և գործում է պարզաց-
րած այն ֆորմուլայով, թե քանի որ կոլ-
խոզը ետ է մնում, ապա բոլորին պետք է
հայհոյել, այն ժամանակ մարդիկ հուսա-
լքվում են, կորչում է դեպի իր ուժերն
ունեցած հավատը: Իսկ քաղաքական ղե-
կավարի խնդիրն այն է, որպեսզի ամրա-
պնդի հաղթանակի վստահությունը: Ամե-
նավատ բրիգադայում պետք է գտնել խը-
րախուսման արժանի մարդ: Միայն այդ
ձևով կարելի է զարգացնել սոցիալիստա-
կան մրցությունը: Միաժամանակ պետք է
կարողանալ հաստատակամ վարվել աշխա-
տանքից խուսափողների հետ, չքաշվել նը-
րանցից պահանջելու, որ ազնվորեն կատա-



րեն իրենց պարտքը Կարմիր Բանակի հան-
դեպ:

Գյուղում մասսայական-քաղաքական աշ-
խատանքի դրվածքում մինչև այժմ հիմնա-
կան թերությունն այն է, որ ղեկավարները
դեռ այդ աշխատանքին կազմակերպչական
մոտեցում չեն ցույց տալիս: Եթե շատ
պարտիական աշխատողներ սովորել են ի-
րենց ձեռքում պահել վճռական տնտեսա-
կան լծակները և օպերատիվորեն ազդել
գործի ընթացքի վրա, ապա երբ խնդիրը
վերաբերվում է պարտիական-քաղաքական
աշխատանքի հարցերին, ամեն ինչ սահմա-
նափակվում է բանաձև ընդունելով կամ
մերկ կոչերով:

Ժամանակն է հասկանալու, որ պարտիա-
կան-քաղաքական աշխատանքը նույնքան
կոնկրետ է և ունի նույն դետալները, ինչ
որ ամեն մի այլ աշխատանք: Մրցությունը
զարգացնել կարելի է միայն այն դեպքում,
եթե սիստեմատիկորեն արդյունքները ամ-
փոփվում են, եթե առաջավորները խրա-
խուսվում են, եթե այդ լայն կերպով
հայտնի է դառնում: Կամ, ասենք, հասնել
այն բանին, որպեսզի գյուղում հայտնի
դառնան Կարմիր Բանակի փայլուն հաղթա-
նակների վերաբերյալ հաղորդագրություն-

ները, կարելի է միայն այն դեպքում, եթե սահմանելի ամենօրյա հսկողություն թերթեր հասցնելու, ռադիոյի աշխատանքի վրա և այլն:

Իսկ այժմ աշխատանքային խանդավառությունը գյուղում բարձրացնելու համար ավելի ուժեղ միջոց չկա, քան կանոնավոր ինֆորմացիայի կազմակերպումը մեր ռազմական հաջողությունների մասին: Եվ այդպիսի ինֆորմացիան պետք է ամենուրեք ապահովվի՝ ինչ գնով էլ լինի:

1944 թ. բերքահավաքի կամպանիան ընթանում է երկրի համար բերկրալից ժամանակաշրջանում. ավարտվում է սովետական հողի ազատագրումը, ավելի ու ավելի պարզ են երևում վերջնական հաղթանակի և այն երջանիկ, անդորր կյանքի ուրվագծերը, որոնցով կապրի հաղթանակած ժողովուրդը:

Մենք ապրել ենք ամենադժվարին օրերը: Բավական է հիշել միայն, որ դեռ 2 տարի առաջ գերմանա-ֆաշիստական զավթիչները իրենց ձեռքում էին պահում հողագործական մի մեծ տերիտորիա: Բայց մենք դիմացանք: Կոլխոզային կարգերը ցույց տվին իրենց դյուցազնական ուժը. չնայած մեծ կորուստներին, մեր կոլխոզներն ու



սովխոզները առանց լուրջ խափանումների բանակին ու երկրին պարենամթերք էին մատակարարում: Ոգևորված Կարմիր Բանակի հաղթանակներով, կոլխոզնիկները վառվում են ավելի ևս լավ աշխատելու ցանկությամբ: Ուրեմն առավել ևս հիմք կա պատերազմի վճռական ժամանակաշրջանում մեր պարտիական կազմակերպություններից պահանջել գյուղատնտեսական աշխատանքների այնպիսի ղեկավարություն, որը կապահովի առանց կորուստների բերքահավաքը և գյուղատնտեսական մթերքների մթերման պլանի կատարումը:

«Партийное строительство» № 13.

---

# ՀԱՋՈՂՈՒԹՅԱՄԲ ՀԱՎԱՔԵՆՔ ԿՈԼԽՈԶԱՅԻՆ ԱՌԱՏ ԲԵՐՔԸ

Ընթացիկ գյուղատնտեսական տարվա բերքահավաքի և գյուղատնտեսական մթերքների մթերումների աշխատանքները կազմակերպելու մասին ՍՍՌՄ Ժողկոմսովետը և ՀամԿ(բ)Պ Կենտկոմը հատուկ որոշում ընդունեցին: Այդ որոշումը աշխատանքի մարտական ծրագիր է տեղական բոլոր պարտիական, սովետական և հողային օրգանների, կոլխոզների, ՄՏԿ-ների և սոցիալիստական գյուղատնտեսության բոլոր աշխատողների համար, որի անշեղ կենսագործումով հնարավորություն կունենանք սեղմ ժամկետում և առանց կորուստի հավաքել ընթացիկ տարվա գյուղատնտեսական կուլտուրաների առատ բերքը, ժամանակին կատարել պետական պարտավորությունները, դրանով իսկ պատերազմի այս վճռական ժամանակաշրջանում Կարմիր Բանակին ու երկրին ապահովել պա-



րենամթերքով, իսկ արդյունաբերությանը հումքով:

ՍՍՌՄ Ժողկոմսովետը և ՀամԿ(բ)Պ Կենտկոմը այս տարվա բերքահավաքն ու գյուղատնտեսական մթերքների մթերումները բնորոշեցին որպես համաժողովրդական կարևորագույն գործ, նրանք տեղական պարտիական, սովետական և հողային օրգանների, բոլոր կոլխոզների ու ՄՏԿ-ների առաջ խնդիր դրեցին ժամանակին նախապատրաստելու բերքահավաքի բոլոր տեսակի մեքենաները՝ կոմբայնները, կալսիչները, հնձիչ մեքենաները, լոբոգրեյկաները, ձեռքի գերանդիները, մանգաղները, բերքահավաքի ձեռքի այլ ինվենտարը, ինչպես նաև տրանսպորտային բոլոր միջոցները: Անհրաժեշտ միջոցառումներ ձեռք առնելու, լրիվ չափով ընդգրկելու բերքահավաքի աշխատանքներում կոլխոզների ողջ աշխատավոր ձեռքերը, ինչպես նաև կոլխոզներին օգնելու նպատակով մոբիլիզացնելու քաղաքների, շրջանային կենտրոնների և բանվորական ավանների բնակչությունը, ճիշտ կազմակերպելով նրանց աշխատանքը բերքահավաքի ընթացքում: Կազմակերպել բերքի ճիշտ հաշվա-

ումը բերքահավաքի, կալման ու փոխադրումների ժամանակ, թույլ չտալով բերքի կորուստ և փչացում, պայքար կազմակերպելու հացահատիկի և գյուղատնտեսական մյուս մթերքների փտումների ու հափշտակումների դեմ, ապահովելու յուրաքանչյուր կոլխոզի կողմից պետական պարտավորությունների կատարումն սահմանված ժամկետներին:

Մեր ռեսպուբլիկայի կոլխոզները, ՄՏԿ-ները 1944 թվի պատերազմի ժամանակվա դժվարին պայմաններում անցյալ տարվանից ավելի հաջող անցկացնելով գարնանացանը, զգալիորեն բարելավեցին դաշտային աշխատանքների որակը և կոլխոզնիկների ու կոլխոզնիկուհիների, ՄՏԿ-ների աշխատողների նվիրված աշխատանքի շնորհիվ պայմաններ ստեղծեցին հացահատիկային և գյուղատնտեսական այլ կուլտուրաների լավ բերք ստանալու համար:

Այժմ մեր ռեսպուբլիկայի կոլխոզները սկսել են բերքահավաքի աշխատանքները, եկել է գյուղատնտեսության ամենաեռուն և ամենադժվարին ժամանակաշրջանը, ոչ մի կասկած չի կարող լինել, որ մեր կոլխոզային գյուղացիությունը կհաղթահարի



պատերազմական ժամանակի ամեն մի դժվարություն և պատվով կկատարի բերքահավաքի ու պետական պարտավորությունների պլանները: Ռեսպուբլիկայում առ 20-ն օգոստոսի կատարված է 200,208 հեկտար հացահատիկային կուլտուրաների բերքահավաք, անցյալ տարվա նույն ժամկետին հնձված 162·709 հեկտարի դիմաց: Կոմբայնով բերքահավաք է կատարված 16·512 հեկտար, անցյալ տարվա նույն ժամկետին հավաքված 10·197 հեկտարի դիմաց, կալսված է 93·911 հեկտար, անցյալ տարվա նույն ժամկետում կալսված 72·006 հեկտարի դիմաց:

Բերքահավաքի աշխատանքները օրինակելիորեն կազմակերպելու գործում բազմաթիվ առաջավոր կոլխոզներ ունենք: Կոտայքի շրջանի Թազա գյուղի «Կարմիր Մաճկալ» կոլխոզում 228 աշխատավոր ձեռքերից 190 հոգին անմիջականորեն ներգրավված են հացահատիկի բերքահավաքի աշխատանքներում, շնորհիվ նրա, որ կոլխոզը կարողացել է ծխախոտի և մյուս

կուլտուրաների մշակման աշխատանքները հիմնականում ավարտել և ուժերը կենտրոնացնել հացահատիկի բերքահավաքի վրա: Աշխատանքները կոլխոզում այնպես են կազմակերպված, որ բերքահավաքը կավարտվի սահմանված ժամկետին, անցյալ տարվա համեմատությամբ մեկ ամիս շուտ: Կոլխոզում բերքահավաքի աշխատանքներում լայն չափով կիրառվում է անհատական գործավարձ, որի հետևանքով կատարվում ու գերակատարվում են սահմանված արտադրական նորմաները, կոլխոզնիկուհիներ Ֆենիկ Հարությունյանը, Եփրաքսիա Կարապետյանը օրական հնձի նորմաները կատարում են 150-ից 200 տոկոսով, դաշտավարական երեք բրիգադաները գիշերում են աշխատանքի վայրում, նրանց համար ստեղծված են աշխատանքի ու հանգստի բոլոր պայմանները, կոլխոզում լավ է կազմակերպված բերքի պահպանումը ու պայքարը կորուստների դեմ, աշխատանքի ու բերքի հաշվառումը կազմակերպված է լավ: Կոլխոզը կատարել է հացահատիկի պետական պարտավորությունները:



Մեր ռեսպուբլիկայի հիմնական հացահատիկային շրջանները, որոնք ձեռնարկել են հացահատիկի բերքահավաքի մասսայական աշխատանքին, չպետք է կրկնեն անցյալ տարվա առանձին կոլխոզներում թույլ տրված սխալները:

Բերքահավաքի աշխատանքների հաջողությունը առաջին հերթին պայմանավորվում է նրանով, թե կոլխոզները ինչ չափով կկարողանան սեղմ ժամկետում և որակական բարձր ցուցանիշներով ավարտել բերքահավաքը: Դրա համար անհրաժեշտ է լրիվ չափով օգտագործել բոլոր ուժերն ու ռեսուրսները, կոլխոզների, ՄՏԿ-ների նյութական տեխնիկական ամբողջ բազան: Բերքահավաքի ու պետական մթերքների մթերումների ասպարեզում կենդանի քաշող ուժը լուրջ դեր է խաղում, այդ իսկ տեսակետից կենդանի քաշող ուժը, իսկ թեթև աշխատանքներում նաև տավար մթերատու կովերի ներգրավումը և նրանց ճիշտ օգտագործումը հաջողության կարևորագույն պայմաններից մեկն է:

Մյուս հարցը՝ դա կորուստների դեմ պայքարելու միջոցներն են. որքան էլ առատ լինի բերքը, նա պետք է հավաքվի

ամբողջովին՝ մինչև վերջին հատիկը. պահանջվում է բերքը խստիվ պահպանել դաշտում դեռ չքաղված ժամանակ, բերքահավաքի, կալսելու, փոխադրելու և պահելու ժամանակ: Դրա համար անհրաժեշտ է հնձից անմիջապես հետո կազմակերպել խրձերի փոխադրում-դարսում, հնձված բոլոր դաշտերում կազմակերպել հասկերի հավաքում, հացահատիկը պահպանելու համար առանձնացնել շրջիկ պահակներ, կալերում կազմակերպել երկհերթ պահակություն և հացահատիկի պաշտպանության կոմերիտական պոստեր: Հացահատիկի յուրաքանչյուր կիլոգրամը պետք է խիստ հաշվառման տակ դնել, վճռական պայքար մղել հացահատիկի և այլ մթերքների կորուստների ու փչացման դեմ, անփույթ վերաբերմունքի, վատնման ու հափշտակման դեմ:

Բերքահավաքի աշխատանքները ժամկետին ավարտելու գործում կարևոր նշանակություն ունի կոմբայնների և կալսիչների անխափան աշխատանքի կազմակերպումը: Այդ նպատակով անհրաժեշտ է, որ կոմբայնային յուրաքանչյուր ագրեգատին նախապես ամրացված լինի հացաբույսերի հո-



ղամասեր, կոմբայնային բերքահավաքին հատկացված պլանի համաձայն և բերքահավաքն սկսելուց ոչ ուշ քան 5 օր առաջ բոլոր կոմբայններն ու տրակտորները լինեն աշխատանքի վայրում: Յուրաքանչյուր կոլխոզ կոմբայնի ագրեգատին պետք է ամրացնի կոլխոզնիկների մշտական կազմը, դաշտի ծայրամասերը և անկյունները հնձելու, վառելանյութ բերելու, հացահատիկ մաքրելու ու չորացնելու համար: Յուրաքանչյուր ՄՏԿ-ը բերքահավաքի ժամանակաշրջանում պետք է սարքավորի շրջիկ արհեստանոց, կոմպլեկտավորելով նրանց նորոգող բանվորների որակյալ կադրերով և ապահովել համապատասխան պահեստամասերով:

Բերքահավաքի աշխատանքներին զուգընթաց՝ բերքը հավաքելու առաջին օրերից պետք է կազմակերպել հացահատիկի, տեխնիկական կուլտուրաների և գյուղատնտեսական այլ մթերքների փոխադրումը պետական մթերակայանները: Պետական պարտավորությունների կատարումը մեր յուրաքանչյուր կոլխոզի առաջին պատվիրանը պետք է լինի:

Կարևորագույն նշանակություն ունի կոլ-

խոզներին լավորակ սերմացուով ապահովելու խնդիրը, այդ տեսակետից բերքահավաքի ընթացքում առանձնակի ուշադրություն պետք է դարձնել սերմնադաշտերի բերքը առանձին կալսելու և սերմացուի պահեստավորման գործի վրա, սերմնադաշտերից ստացված բերքը պետք է օգտագործել բացառապես սերմացուի կարիքների համար, արգելել նրա օգտագործումը որևէ այլ նպատակի:

Այժմ, երբ մեր երկիրը թևակոխել է պատերազմի վճռական ժամանակաշրջանը, կոլխոզային գյուղը լի է վճռականությամբ՝ հաղթահարելու ամեն մի դժվարություն, սամականորեն անցկացնելու բերքահավաքը, բոլշևիկորեն կատարելու գյուղատնտեսական մթերքների մթերումների պլանները, է՛լ ավելի բարձրացնելու համամիութենական սոցիալիստական մրցության դրոշը, ուժեղացնելու մեր հաղթական Կարմիր Բանակին ցույց տրվող օգնությունը:

Հ. ՄԱՐԶԱՆՅԱՆ
(Հայկական ՍՍՌ հողժողկոմ)



# ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐՆ ՕԳՆՈՒՄ ԵՆ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԻՆ

Եռուն օրեր է ապրում կոլխոզային գյուղը: Ռեսպուբլիկայի գրեթե բոլոր շրջաններում սկսվել է հացահատիկային կուլտուրաների հունձը: Արագորեն հասունանում են ծխախոտը, բամբակը: Կոլխոզային աշխատավորության մի մասը չորրորդ տարին է գտնվում է Կարմիր Բանակում, նրանց փոխարինել են իրենց հարազատ քույրերը, կանայք և երեխաները: Պիոներ-դպրոցականները մեծ ուժ են բերքահավաքի աշխատանքներին օգնելու գործում: Միայն անցյալ տարի ամռանը մեր ռեսպուբլիկայի դպրոցականները հավաքել են 2 միլիոն կիլոգրամ հացահատիկ և վաստակել 92.445 աշխօր: Շատերը համամիութենական սոցիալիստական մրցությունից պատվով դուրս եկան, որի համար էլ 12 ուսուցիչ, 4 պիոներական ջոկատ, մեկ դպրոց և 23 պիոներ-դպրոցական ստացան ՌՍՖՍՌ-ի

Լուսժողկոմատի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի պատվոգրեր:

Պատվոգիր ստացավ Դյուզքենդի շրջանի Ջաջուռ գյուղի լրիվ միջնակարգ դպրոցի դիրեկտոր ընկ. Ս. Մկրտչյանը: Նա այս տարի նույնպես լավ է կազմակերպել դըպրոցականներին կոլխոզային աշխատանքներին մասնակցելու համար: Գարնան գյուղատնտեսական աշխատանքներին Ջաջուռում մասնակցել են 170 դպրոցական, նրանք յուրաքանչյուրը վաստակել են 50 աշխօրից ավելի:

Այս տարի առատ բերք է հասունացել մեր դաշտերում: Անհրաժեշտ է ուժեղացնել օգնությունը կոլխոզներին, որպեսզի ժամանակին ավարտվի բերքահավաքը:

Ուսուցիչների ղեկավարությամբ կազմակերպվել են հասկ հավաքող օղակներ: Ղամարլուի շրջանում կազմակերպվել է 51 օղակ, որտեղ ընդգրկվել են 1264 աշակերտ և 150 ուսուցիչ:

Կարաբաղլարի շրջանում 1.600 աշակերտ և 60 ուսուցիչ են դուրս գալիս բերքահավաքի աշխատանքներին: Ծաղավերի և Զիման գյուղերում դպրոցականները տասն օրվա ընթացքում երեք տոննա հասկ են հա-



վաքել: Կաղլու գյուղի դպրոցի 8-րդ դասարանի աշակերտուհի Վերգուշ Սադաթելյանը մանգաղով օրական 4.500—5.000 մետր տարածություն է հնձում: Աշխատանքային 16 օրում նա վաստակել է 54 աշխօր: Դպրոցականներն ու ուսուցիչները սոցիալիստական մրցության մեջ են մտել բերքահավաքի շրջանում փոխանցիկ կարմիր դրոշ և պատվոգիր ստանալու համար:

Բեթրան գյուղում հասկ հավաքող օղակներից մեկի ղեկավարն է ուսման գերազանցիկ Վարդուշ Առաքելյանը: Նրա երեք եղբայրները գտնվում են Կարմիր Բանակում: Վարդուշը ձգտում է թե՛ ուսման մեջ և թե՛ աշխատանքում ետ չմնալ իր ռազմիկ եղբայրներից: Նա պայմանավորվել է իր եղբայրների հետ, որ ինքը ինչքան հասկ հավաքի, նրա եղբայրներն էլ նույն թվով գերմանական զավթիչ ոչնչացնեն ռազմաճակատում:

Օրական 14 կիլոգրամ և ավելի հասկ են հավաքում Բեթրան գյուղի դպրոցի աշա-

Լուսժողկոմատի և ՀամԼԿԵՄ կենտկոմի պատվոգրեր։

Պատվոգիր ստացավ Դյուզքենդի շրջանի Ջաջուռ գյուղի լրիվ միջնակարգ դպրոցի դիրեկտոր ընկ. Ս. Մկրտչյանը։ Նա այս տարի նույնպես լավ է կազմակերպել դպրոցականներին կոլխոզային աշխատանքներին մասնակցելու համար։ Գարնան գյուղատնտեսական աշխատանքներին Ջաջուռում մասնակցել են 170 դպրոցական, նրանք յուրաքանչյուրը վաստակել են 50 աշխօրից ավելի։

Այս տարի առատ բերք է հասունացել մեր դաշտերում։ Անհրաժեշտ է ուժեղացնել օգնությունը կոլխոզներին, որպեսզի ժամանակին ամբարվի բերքահավաքը։

Ուսուցիչների ղեկավարությամբ կազմակերպվել են հասկ հավաքող օղակներ։ Ղամարլուի շրջանում կազմակերպվել է 51 օղակ, որտեղ ընդգրկվել են 1264 աշակերտ և 150 ուսուցիչ։

Կարաբաղլարի շրջանում 1.600 աշակերտ և 60 ուսուցիչ են դուրս գալիս բերքահավաքի աշխատանքներին։Ծաղավեր և Ձիման գյուղերում դպրոցականները տասն օրվա ընթացքում երեք տոննա հասկ են հա-



վաքել։ Կողբլու գյուղի դպրոցի 8-րդ դասարանի աշակերտուհի Վերգուշ Սաղաթելյանը մանգաղով օրական 4.500—5.000 մետր տարածություն է հնձում։ Աշխատանքային 16 օրում նա վաստակել է 54 աշխօր։ Դպրոցականներն ու ուսուցիչները սոցիալիստական մրցության մեջ են մտել բերքահավաքի շրջանում փոխանցիկ կարմիր դրոշ և պատվոգիր ստանալու համար։

Բեթրան գյուղում հասկ հավաքող օղակներից մեկի ղեկավարն է ուսման գերազանցիկ Վարդուշ Առաքելյանը։ Նրա երեք եղբայրները գտնվում են Կարմիր Բանակում։ Վարդուշը ձգտում է թե՛ ուսման մեջ և թե՛ աշխատանքում ետ չմնալ իր ռազմիկ եղբայրներից։ Նա պայմանավորվել է իր եղբայրների հետ, որ ինքը ինչքան հասկ հավաքի, նրա եղբայրներն էլ նույն թվով գերմանական զավթիչ ոչնչացնեն ռազմաճակատում։

Օրական 14 կիլոգրամ և ավելի հասկ են հավաքում Բեթրան գյուղի դպրոցի աշա-

կերտուհիներ Գյուլվարդը, Անուշը, Թագուհին, Աղունը և ուրիշները:

Դպրոցականների լոզունգն է.— ոչ մի հատիկ կորուստ, օգնել հայրենիքին բերքահավաքը սեղմ ժամկետում ավարտելու համար:

Եվ իրոք, պատանի հայրենասերները ազնվությամբ են կատարում իրենց խոստումը:

ԼԿԵՄ գյուղական շրջկոմները, ուսուցչական, աշակերտական, ինչպես նաև կոլտնտեսների, սովխոզների ԼԿԵՄ կազմակերպությունները պետք է ժողկրթության բաժինների և դպրոցների դիրեկտորների հետ միասին կազմակերպեն դպրոցականների ակտիվ մասնակցությունը 1944 թ. գյուղատնտեսական աշխատանքներին, այն համարելով դպրոցի դաստիարակչական աշխատանքների շարունակությունը:

Բերքահավաքի աշխատանքներին աշակերտության մասնակցության հիմնական ձևը ընդունելով դպրոցական ջոկատները, պետք է հասնել այն բանին, որպեսզի բոլոր աշակերտներն ու ուսուցիչները մաս-



նակցեն բերքահավաքին և շատ դպրոցներ ընդգրկվեն համամիութենական սոցիալիստական մրցության մեջ, ու պատվով դուրս գան մրցությունից:

Մեր ուսուցիչների հիմնական խնդիրն է՝ ուսումնական նոր տարվա աշխատանքներին նախապատրաստվելու հետ միասին, կազմակերպել դպրոցականների աշխատանքային խանդավառությունը, օգնել կոլտնտեսային գյուղին սեղմ ժամկետում և առանց կորուստի հավաքելու ռազմական բարձր բերքը:

Ա. ԽՐԻՄԼՅԱՆ
(ՀԿ(բ)Պ Կենտկոմի դպրոցական
բաժնի վարիչ)

# ԱՎԵԼԻ ԲԱՐՁՐԱՑՆԵՆՔ ԱԳԻՏԱՑԻՈՆ-ՄԱՍՍԱՅԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԻ ԸՆԹԱՑՔՈՒՄ

Կարմիր Բանակի հուժկու հարվածների տակ ֆաշիստական Գերմանիան կրում է պարտություն պարտության ետևից և ապրում է քաղաքական ու ռազմական խոշոր ճգնաժամ: Սովետական զորքերը մեկ և կես տարուց ավելի անընդհատ ծավալելով հարձակումը ռազմաճակատի ամբողջ գծով՝ կործանեցին թշնամու ցամաքային ու ջրային ուժեղ պաշտպանական գծերը՝ ֆաշիստական բանակին պատճառելով մարդկային ու տեխնիկայի խոշոր կորուստներ: Հարձակողական մարտերի ընթացքում Կարմիր Բանակը գերմանական գերությունից ազատագրեց միլիոնավոր սովետական քաղաքացիների, մեկ և կես միլիոն քառակուսի կիլոմետր թշնամու կողմից զավթված սովետական տերիտորիա, ֆաշիստական Գերմանիան կանգնած է կատաս-



տրոֆայի առաջ, նա արդեն տանուլ է տվել պատերազմը, բայց դեռ վերջնականապես ջախջախված չէ. «Պատերազմը թևակոխել է ամենավտանգի, վճռական և դժվար շրջանը»: Այս պատմական օրերին անհրաժեշտ է, որ թիկունքը Կարմիր Բանակին ու երկրին տա այն ամենը, ինչ անհրաժեշտ է վերջնական հաղթանակն ապահովելու համար: Անհրաժեշտ է, որ թիկունքի մարտիկները ետ չմնան Կարմիր Բանակի մարտիկներից:

Նշանաբան ունենալով ընկեր Ստալինի մայիսմեկյան հրամանը, պարտիայի և կառավարության որոշումները՝ ինչպես ողջ Միության, նույնպես և մեր ռեսպուբլիկայի կոլխոզային գյուղացիությունը պատվով կատարեցին գարնան գյուղատնտեսական աշխատանքների պլանները, համառ կերպով պայքարեցին բարձր բերք աճեցնելու համար և այժմ ամենուրեք սկսել են առատ ու հարուստ բերքահավաքի շրջանը՝ գյուղատնտեսական աշխատանքների դժվար ու լարված ժամանակաշրջանը, երբ աշխատանքի լավ կազմակերպումից, բերքն անկորուստ հավաքե-

լուց է կախված թափված ջանքերի ար-
դարացումը:

Դրա համար է, որ կոլտնտեսականների բու-
ռըն եռանդի կազմակերպման, նրանց օգ-
նության գործն այս շրջանում առանձնա-
հատուկ նշանակություն է ստանում և
այդ գործում իր պատվավոր դերը պետք
է կատարի պրոպագանդիստական, հասարակական
կազմակերպությունների միջոցով ծավալ-
ված քաղաքական-մասսայական ագիտա-
ցիան և առաջին հերթին՝ ամեն մի ագի-
տատոր, որին պարտիան հանձնարարել է
տարածել բոլշևիկյան խոսքը և կազմակեր-
պել մասսաներին բոլշևիկորեն:

Բերքահավաքի ընթացքում գյուղում
տարվող քաղաքական-մասսայական ագի-
տացիոն աշխատանքների, ամեն մի ագի-
տատորի հիմնական խնդիրներն են հանդի-
սանում՝ կազմակերպել կոլտնտեսականներին և
կոլտնտեսուհիներին ամենօրյա քաղաքա-
կան ինֆորմացիա տալու գործը նրանց
աշխատանքի վայրում՝ լինի դա դաշտ,
ֆերմա, թե յայլաղ. ինֆորմբյուրոյի հա-
ղորդագրությունների, թերթերի, բրո-
շյուրների ընթերցանության միջոցով, որի
ընթացքում հիմնական պայմանն է՝ զու-



գակցել, կապել այն կոլխոզի բրիգադայի,
օղակի արտադրական հարցերի հետ: Այդ
պատճառով էլ ագիտացիայի հիմնական
ձևը բերքահավաքի ընթացքում պետք է
լինի զրույցը, որի ժամանակ ագիտատորը
պատմելով ռազմաճակատում տեղի ունե-
ցած իրադարձությունների մասին, ավելի
հեշտ և ունկնդիրների համար ըմբռնելի
ձևով կարող է անցնել նախօրոք մտածված
ու պատրաստած արտադրական հարցերին:

Այս շրջանում հիմնական արտադրական
խնդիրները, որոնց շուրջը պետք է կազ-
մակերպի ագիտատորն իր աշխատանքը՝
գյուղի աշխատունակ բոլոր անձանց դաշտ
դուրս բերելու, բանվորական օրը լրիվ և
ինտենսիվ օգտագործելու, բերքն անկո-
րուստ հավաքելու համար պայքար կազ-
մակերպելու, վառելանյութի խնայողու-
թյան, քաշող ուժի և մեխանիկական պար-
կի լրիվ ու նպատակահարմար օգտագործ-
ման հարցերն են:

Ագիտատորի ուշադրության կենտրոնը
պետք է լինի բրիգադաներում և օղակնե-
րում ամեն մի կոլտնտեսի աշխատանքի,
հավաքած բերքի ճիշտ հաշվառումը, պե-

տական պարտավորությունները ժամանակին կատարելու հարցը։

Սակայն ագիտատորներից բոլորը չէ, որ ինքնուրույն կերպով կկարողանան գտնել թույլ օղակը բրիգադայի աշխատանքներում, կապել զրույցը, կապել այն ընթացիկ օրվա հարցերի հետ. այստեղ ագիտատորներին պետք է օգնություն դան ագիտկոլեկտիվը և նրա ղեկավարը։ Երբ լավ է աշխատում ագիտկոլեկտիվը, երբ նա օգնում է ագիտատորին՝ իր տեսական մակարդակը բարձրացնելու, զրույցների և ագիտացիայի թեման ու ձևերը որոշելու գործում, լավ է աշխատում նաև ագիտատորը, նրա ագիտացիան և՛ նպատակասլաց է լինում, և՛ կենդանի ու արդյունավետ։ Աշտարակի շրջանի Աշտարակ գյուղի կոլխոզի սկզբնական պարտկազմակերպության ագիտկոլեկտիվը, որի ղեկավարն է ընկ. Փանոս Հովհաննիսյանը, հենց այդ սկզբունքից էլ ելած՝ կազմակերպել է իր աշխատանքը. ամենից առաջ՝ այդ ագիտկոլեկտիվն ունի ագիտատորների համար մշտական օրեր. ամեն ուրբաթ օր տեղի է ունենում ագիտատորների խորհրդակցություն, որտեղ ագիտատորները ստանում



են համապատասխան հրահանգավորում և կատարվում է փորձի փոխանակում։ Հետաքրքրական են այն հարցերը, որոնք քննել է այդ ագիտկոլեկտիվը հուլիսին իր երեք խորհրդակցություններում։ Ահա դրանք.

1. Սոցմրցման պայմանագրերի ստուգման արդյունքները և ինչպես մասսայականացնել այն։

2. Ինֆորմացիա ագիտատորներին՝ դաշնակիցների դեսանտային գործողությունների մասին Հյուսիսային Ֆրանսիայում։

3. № 2 բրիգադայի ագիտատոր Եպրակյա Ներսիսյանի ինֆորմացիան այն մասին, թե ինչպես է ինքը պայքարում բրիգադայի արտադրական դիսցիպլինայի բարձրացման համար։

4. Իլյա Էրենբուրգի «Հունիս» հոդվածի ընթերցումն ու պարզաբանումը։

5. Խորհուրդներ ագիտատորներին. «Ինչպե՞ս պայքարել անորակ հնձի դեմ»։

Ագիտկոլեկտիվի ղեկավար ընկ. Հովհաննիսյանը, բացի այդպիսի խորհրդակցություններ գումարելուց, ամեն օր հետևում է իր ագիտատորների աշխատանքին, հանձնարարելով նրանց, թե ինչ

կարդալ թերթերից և ինչպե՛ս կարդալ։

Այդպիսի օգնության և ղեկավարության հետևանքը պարզ է։ Դա ագիտատորների ամենօրյա նպատակասլաց ագիտացիան է, ագիտատորներ, որոնք ոչ միայն ապահովում են քաղաքական ինֆորմացիայի հարցը, այլև ինչպես պահանջվում է՝ գործնականորեն պայքարում են բերքահավաքի հաջող ավարտման, կոլխոզի հաստատ աշխատանքի համար։

Բերենք ագիտատորներից մեկի՝ № 3 բրիգադայի ագիտատոր ընկեր Դաշտո Հովհաննիսյանի կատարած աշխատանքներից մեկ օրինակ. բերքահավաքի ժամանակ ընկ. Հովհաննիսյանը նկատեց, որ հնձվոր կանանցից մի քանիսը ետ են մնում, և ետ են մնում ոչ թե այն պատճառով, որ վատ են աշխատում, կամ չեն ուզում աշխատել, այլ այն պատճառով, որ հունձ անել չգիտեն, որովհետև նրանք առաջին անգամն է, որ դաշտում աշխատում են որպես հնձվորներ։ Այդ կանանց հնձել սովորեցնելու նպատակով ագիտատորը կազմակերպում է իր բրիգադայում ագրոտեխնիկի զրույց այն մասին, թե ինչպես պետք է



կատարել հունձը, և դաշտում, գործնականում սովորեցնում է այդ կանանց։ Հովհաննիսյանը ետ մնացողներին կցում է ավելի որակյալ հնձվորների, աշխատելով, որ նրանք միասին, մեկ տարածության վրա կատարեն հունձը։ Այս միջոցառումները տվեցին իրենց դրական արդյունքը։ Այդ կանայք, սոցմրցության մեջ են մտել և ետ չեն մնում բրիգադայի առաջավորներից, իսկ Հռիփսիկ Մանուկյանը և Արմենուհի Մուրադյանը, որոնք օրվա նորմաները կատարում էին 60—70 %-ով, սկսեցին օրվա նորմաները կատարել 145 և ավելի տոկոսով։

Լավ աշխատող ագիտկոլեկտիվներ և ագիտատորներ մենք ունենք մեր ռեսպուբլիկայի բոլոր ռայոններում էլ, սակայն նրանց փորձի փոխանակումը հենց նույն ռայոնում լավ չի կազմակերպված։

## ԱԳԻՏԱՏՈՐԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊԻՉ

Բերքահավաքի ժամանակ այնպես, ինչպես միշտ, ագիտատորները պետք է հանդիսանան սոցիալիստական մրցության կազմակերպիչներ, որովհետև մրցությունը,

որը մտել է սովետական գյուղացիության կենցաղի մեջ որպես աշխատանքի կազմակերպման նոր, սոցիալիստական ձև, կըհանդիսանա պայմաններից մեկը՝ բերքը ժամանակին և անկորուստ հավաքելու գործում: Սոցիալիստական մրցության կազմակերպման ընթացքում ամեն մի ագիտատոր պետք է լավ հիշի ընկեր Ստալինի ցուցումն այն մասին, որ՝ «Սոցիալիստական մրցությունն ասում է՝ ոմանք աշխատում են վատ, ուրիշները՝ լավ, երրորդները ավելի լավ,—հասի՛ր ավելի լավ աշխատողներին և ձգտի՛ր ընդհանուր վերելքի» (Ի. Ստալին): Ուրեմն, ընդհանուր վերելքին հասնելու համար, մրցության մեջ հիմնականը բոլոր կոլխոզնիկների ընդգրկումն է և օրվա արտադրական նորմաների կատարումն ու գերակատարումը ամեն մի կոլխոզնիկի կողմից:

Սոցիալիստական մրցման ասպարեզում ագիտատորի աշխատանքն սկսվում է դեռ մինչև պայմանագրի կնքումը՝ բացատրական աշխատանքով, մրցության նշանակության մասին, իսկ հիմնականը պայմանագրերի կնքումն է, որտեղ պետք է հաշվի առնել բրիգադայի պլանները կարճ ժամ-



կետում ավարտելու, բերքն անկորուստ հավաքելու, լավված ու բարձրորակ աշխատանք թափելու անհրաժեշտությունը:

Պայմանագրեր կազմելու աշխատանքը շատ կարևոր է, որովհետև հետագայում ամբողջ պայքարը սոցիալիստական մրցման ընթացքում գնալու է պայմանագրերով վերցված պարտավորությունների կատարման համար: Բերիայի անվան շրջանի Շահումյանի անվան կոլխոզում բոլոր անհատական և բրիգադային պայմանագրերում սառնպարտ կերպով գրված է. «Զուրը կատարել ժամանակին, խոտը քաղել ժամանակին և աշխատանքի դուրս գալ շուտ»: Փորձեցեք ստուգել այս պայմանագրի կատարման ընթացքը: Այդ հնարավոր չէ, որովհետև այնտեղ ոչ կոնկրետ պարտավորություններ կան և ոչ էլ ժամկետներ, ընդհանուր են և ոչ մտածված: Այսպիսի պայմանագրերը ձևական են և քիչ չեն վնասում սոցիալիստական մրցությանը:

Ագիտատորի պայքարը սոցիալիստական մրցությամբ վերցրած պարտավորությունների կատարման համար պետք է գնա ագիտացիոն աշխատանքի բոլոր ձևերով.

զրույցներ հանգստի ժամերին՝ սոցմրցման ընթացքի, ստուգման արդյունքների մասին, առաջավորների աշխատանքի փորձի մասին, այդ նյութերի հրապարակումը պատի թերթերում, լիստովկաներում: Զրույցների ընթացքում բոլշևիկյան քննադատության պետք է ենթարկել բրիգադայի դիսցիպլինան խախտողներին, գլուխ պահողներին, աշխատանքի թերությունները: Ագիտատորի խոսքը տեղ կհասնի և կտա ռեալ արդյունք ամենից առաջ այնտեղ, որտեղ ագիտատորն ինքն իր անձնական օրինակով պայքարում է պլանների կատարման համար, հանդիսանալով առաջավորը կոլխոզնիկների մեջ:

Մեր ռեսպուբլիկայի ռայոններից մեծ մասում սոցիալիստական մրցությունը մեծ ծավալ է ստացել, քիչ չէ այն ռայոնների թիվը, որտեղ բոլոր կոլխոզները, բրիգադները և օղակները, աշխատող ձեռքերի գերազանց մեծամասնությունն ընդգրկված են մրցության մեջ: Այդպես է Ստեփանավանի, Ն. Բայազետի, Բասարգեչարի, Նոյեմբերյանի, Ալավերդու ռայոններում: Միկոյանի ռայոնում բոլոր 36 կոլխոզները, 140 դաշտավարական բրիգադները,



64 անասնապահական ֆերմաները, 154 օղակները և 4516 կոլտնտեսականներ ընդգրկված են մրցության մեջ: Վաղարշապատի ռայոնում բոլոր կոլխոզները, 2 սովխոզական տնտեսությունները, 200 բրիգադներ, 570 օղակներ և բոլոր աշխատող ձեռքերի 95 տոկոսը սոցիալիստական մրցության մեջ են ընդգրկված: Հենց այս ռայոններումն էլ սոցիալիստական մրցման գործում խոշոր դեր են խաղացել մեր գյուղական ագիտատորները:

Վաղարշապատի շրջանում սոցիալիստական մրցությամբ վերցրած պարտավորությունների կատարման ընթացքը շատ գյուղերում ագիտատորների կողմից ըստուգվում է ամեն օր և արդյունքները մասսայականացվում են բրիգադներում, սիստեմատիկաբար լուսաբանվում ոչ միայն պատի թերթերում և ռայոնական թերթում, այլև ռեսպուբլիկական թերթերում: Վերին Ղարխուն գյուղի կոլտնտեսության № 1 բրիգադան, որը սոցիալիստական մրցության պայմանագրով պարտավորություններ էր վերցրել բամբակի ցանքի լավորակ մշակության վերաբերյալ, աշխատանքի սկզբում վատ էր մշակում բամ-

խակի ցանքերը: Ագիտատորն անցկացրեց զրույց հանգստի ժամին, որոշ ժամանակից հետո ռայոնական թերթում հրապարակվեց համեմատությամբ վերցրած պարտավորությունների ընթացքը, որտեղ քննադատվեց այդ բրիգադան՝ վատ աշխատանքի համար: Կոլտնտեսականները և նրանց բրիգադիրը որոշեցին ինչ գնով էլինի հասնել առաջավոր բրիգադաներին և ագիտատորի մասնակցությամբ մշակեցին նոր միջոցառումներ: Մի քանի օրվա ընթացքում № 1 բրիգադան ոչ միայն կարգավորեց իր աշխատանքները, այլև իր տեմպերով ու աշխատանքի որակով առաջ անցավ առաջավոր № 5 բրիգադայից:

Նույն շրջանի Միկոյանի անվան կոլխոզի № 3 բրիգադայի ագիտատոր ընկ. Համլիկ Եղիազարյանը, ստուգելով մրցության անհատական պայմանագրերի կատարման ընթացքը, պարզեց, որ կոլխոզնիկուհիներ Վարսիկ Շահինյանը, Միրուշ Մելքումյանը և Նուբար Նազարյանը վատ են կատարում իրենց պարտավորությունները, ուշանում են աշխատանքից և վատորակ աշխատանք կատարում: Ընկ. Եղիազարյանն ագիտժամին պատմեց պայմանա-



գրերի կատարման ստուգման արդյունքների մասին և խիստ քննադատության ենթարկեց նշված կոլխոզնիկուհիներին՝ ցույց տալով, թե ինչպես նրանք կարող են և պետք է առաջավոր աշխատողներ լինեն: Նույն զրույցի ժամանակ այդ կոլխոզնիկուհիներն արտահայտվեցին, բրիգադայի առաջ խոսք տվեցին աշխատել լավ և ետ չմնալ մյուսներից: 4 օր անց, նրանցից յուրաքանչյուրն օրվա նորմաները արդեն կատարում էր 150—200 տոկոսով:

## ԱԳԻՏԲՐԻԳԱԴԱՆԵՐԻ ԵՎ ԴԻՏՈՂԱԿԱՆ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ՄԱՍԻՆ

Բերքահավաքի ընթացքում մի շարք շրջաններում լայն ծավալ է ստացել քաղաքական ագիտացիայի այնպիսի ձև, որպիսին է ագիտբրիգադան և նրա աշխատանքը: Չհաշված քաղաքները, ռեսպուբլիկայի 14 շրջաններում կազմակերպված են 30-ից ավելի ագիտբրիգադաներ, որոնք բազմաթիվ ելույթներ են ունեցել դաշտերում՝ կոլտնտեսականների համար: Լավ են աշխատում Ստեփանավանի, Ալավերդու, Միկոյանի, Բայազետի, Գորիսի շրջանների ագիտբրիգադաները:

Նորը և հետաքրքրականն այդ գործում այն է, որ վերջին ժամանակներս շրջանա-յին և գյուղական ինտելիգենցիայից կազմ-ված այս բրիգադները քաղաքական ագի-տացիայի և գեղարվեստական սպասարկ-ման զուգակցումից բացի իրենց առաջ դրել են նաև արտադրական-տնտեսական հարցերի լուծումը: Այսպիսի շաղկապումը տալիս է իր դրական արդյունքը:

Բայազետի շրջկոմի ագիտբրիգադները Պետական 3-րդ ռազմական փոխառության բաժանորդագրության ժամանակ ելույթներ են ունեցել գյուղերում, բացի այդ, հրատա-րակել են լիստովկաներ, դրել են համապա-տասխան լոզունգներ, և բոլոր այն գյուղե-րում, որտեղ եղել է ագիտբրիգադը, փո-խառության բաժանորդագրությունն անցել է ա-րագ և հաջող կերպով:

Այսպիսի ագիտբրիգադներ կարող են կազմակերպել սկզբնական պարտկազմա-կերպությունները յուրաքանչյուր գյուղում, հատկապես մեծ գյուղերում, որտեղ կա համապատասխան ինտելիգենցիա, երիտա-սարդություն: Գյուղական ակումբին կից գործող ինքնագործ խմբակներից և ակ-տիվիստներից կազմած այդ բրիգադները



հանգստի ժամերին, երեկոները, բրիգա-դաներում ելույթներ կունենան, ցուցա-դրելով երգ, պար, արտասանություն և կկազմակերպեն դատախազություն կամ զրույց քաղաքական կամ գյուղատնտեսա-կան հարցերի շուրջը:

Գարնանացանի ընթացքում Միկոյանի և Իջևանի շրջաններում գյուղական ակումբ-ներին կից կազմակերպել էին շարժական գրադարան-ագիտպունկտներ, որոնք աշխա-տանքի ժամանակ շրջում էին կոլխոզի բրիգադները և սպասարկում թե՛ բրիգա-դայի ագիտատորին թարմ թերթերով և գրականությամբ, և թե՛ կազմակերպում աշխատանքը բրիգադայում (լիստովկա-ների հրատարակում, ռազմաճակատի վե-րաբերյալ թարմ լուրերի հաղորդում և այլն):

Անհրաժեշտ է, որ գյուղական ակումբ-ների վարիչները և սկզբնական պարտկազ-մակերպությունները բերքահավաքի ըն-թացքում օգտագործելով այդ փորձը, կազ-մակերպեն այսպիսի շարժական գրադա-րան-ագիտպունկտներ, որոնք կամ հարմա-րեցված կլինեն սայլի վրա (եթե մեծ են), կամ որոշ հարմարություններ կստեղծվեն,

որպեսզի ինքը՝ ակումբի վարիչը տեղափոխի ագիտպունկտը բրիգադայից-բրիգադ, այն հաշվով, որ երկու կամ երեք օրը մեկ անգամ շարժական ագիտպունկտը լինի կոլխոզի յուրաքանչյուր բրիգադայում և առանձին աշխատող օղակում։

Շարժական գրադարան-ագիտպունկտում պետք է ունենալ ընթացիկ մասսայական գրականություն, շրջանային և ռեսպուբլիկական թարմ թերթեր, ընթացիկ մոմենտին և բերքահավաքին վերաբերող լոզունգներ, սոց. մրցության արդյունքները ցուցադրող տախտակներ։ Նպատակահարմար է շարժական ագիտպունկտին կցել գյուղի ինտելիգենցիայից համապատասխան մարդկանց՝ առանձին հարցերի շուրջը զրույցներ անցկացնելու համար։

Բերքահավաքի ընթացքում լայն կերպով պետք է օգտագործել քաղաքական և արտադրական դիտողական ագիտացիայի բազմազան ձևերը, ինչպիսիք են պլակատները, լոզունգները, «Մարտական թերթիկները», «Կայծակ» թերթիկները, թերթերի և վերջին լուրերի ցուցափեղկերը, սոցիալիստական մրցման արդյունքների տախտակը, պատվո տախտակը, թերթերից և



ժուռնալներից կտրած նկարների ցուցափեղկերը և այլն։ Ստեփանավանի շրջանի Գյուլագարակ գյուղի ագիտկոլեկտիվը պատրաստել է տեմպերի տախտակ, որտեղ գրանցվում է բրիգադաների օրվա կատարած աշխատանքը գիշերը և ամեն առավոտ վաղ, աշխատանքի գնալիս, կոլխոզնիկները ծանոթանում են նախորդ օրվա աշխատանքների ցուցանիշներին, բացի այդ, ագիտ. կոլեկտիվն ունի նաև առաջավոր կոլխոզնիկների լուսանկարների ցուցափեղկ, որը փակցվում է գյուղի ակումբում և ուղարկվում է դաշտ, բրիգադաներում ցույց տալու համար։

Դիտողական ագիտացիայի նյութերը պետք է պատրաստել ակումբում, վարիչի և ագիտկոլեկտիվի ղեկավարի անմիջական մասնակցությամբ։

Գյուղական ակումբների վրա մեծ պարտականություն է դրված բերքահավաքի ընթացքում ագիտացիոն աշխատանքները ծավալման ուղղությամբ։ Տասնյակ ակումբի վարիչներ հենց այժմ էլ լավ պատկերացնելով իրենց դերն այդ գործում, օրինակելի աշխատանք են կազմակերպել։ Ուսանելի է Իջևանի շրջանի Սևքար, Ծաղկավան, Լա-

լի և Խաչթառակ գյուղերի ակումբների աշխատանքը: Սևքար գյուղի ակումբի վարիչ ընկ. Ղալումյանն ամեն օր առավոտյան շուտ լսում է Սովետական Ինֆորմբյուրոյի հաղորդագրությունը և «Վերջին լուրեր», համառոտ գրի է առնում այն, բազմացնում 6—7 օրինակ և հանձնում ագիտատորներին՝ բրիգադաներում մասսայականացնելու համար: Հաճախ ընկ. Ղալումյանն այդպիսի նյութերով սպասարկում է նաև Սևքարի ենթաշրջանի մյուս գյուղերի ագիտկոլեկտիվներին, որտեղ ռադիոլիծ չկա: Այդ ակումբի աշխատանքն սկսվում է դեռ լույսը լրիվ չբացված, որտեղ ամեն օր, նախքան դաշտ աշխատանքի գնալը, հավաքվում են ագիտատորները, ուր ագիտկոլեկտիվի ղեկավար ընկ. Ծուղուրյանը նրանց համապատասխան հրահանգավորում է տալիս այն մասին, թե ինչպես կազմակերպել ագիտացիան այդ օրը և ինչի՛ շուրջը: Երեկոները օրվա աշխատանքն ամփոփելուց հետո, ակումբում պատրաստվում են բրիգադային լետուչկաները, իսկ երգի, պարի և թատերական ինքնագործ խմբակները հատուկ պլանով սպասարկում են կոլտնտեսականներին,



հաճախակի ելույթներ ունենալով դաշտում:

Անսասան է սովետական ժողովրդի սերը դեպի հայրենիքը և փառապանծ Կարմիր Բանակը: Սովետական հայրենասիրությունը, աշխատանքային հսկայական վերելքը, հայրենիքը պաշտպանելու վեհ գաղափարը հայրենական պատերազմի այս օրերին հանդիսանում են մեր հաղթանակների աղբյուրը: Գյուղական պարտիական կազմակերպությունների, ամեն մի ագիտատորի պարտականությունն է՝ քաղաքական-մասսայական-ագիտացիոն աշխատանքների ծավալման միջոցով կազմակերպել մասսաների աշխատանքային վերելքը, նրանց եռանդը և ուղղել այն հաղթանակի բերքի անկորուստ հավաքման, պետական պարտավորությունների ժամանակին ու լրիվ կատարման համար:

Գ. ԱՍՏՎԱԾԱՏՐՅԱՆ
(ՀԿ(բ)Պ Կենտկոմի Ագիտացիայի և պրոպագանդայի բաժնի ագիտացիայի սեկտորի վարիչ)

---

# ԶՐՈՒՅՑ ԴԱՇՏՈՒՄ

## 1. ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ՀՈԳԱՏԱՐՈՒԹՅՈՒՆԸ ՄԱՅՐԵՐԻ ԵՎ ԵՐԵԽԱՆԵՐԻ ՆԿԱՏՄԱՄԲ

*Այս տարի հուլիսի 8-ին հրապարակվեց ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագիրը՝ «Հղի կանանց բազմազավակ և միայնակ մայրերին պետական օգնությունն ավելացնելու, մայրության և մանկության պահպանությունն ուժեղացնելու, «Հերոսուհի մայր» պատվավոր կոչում սահմանելու, «Մայրական փառք» շքանշան և «Մայրության մեդալ» մեդալ հիմնելու մասին»:*

*Մեր սոցիալիստական պետության այս նոր օրենքը կրկին ցայտուն կերպով վկայում է բոլշևիկյան պարտիայի և սովետական կառավարության հոգատարությունը մեր ժողովրդի, երեխաների և մայրերի նկատմամբ:*

*Հարգանքը դեպի մայր-կինը, սերը դեպի երեխաները սովետական քաղաքացու մեջ*



միս ու արյուն են դարձել: *ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագիրը նպատակ ունի խրախուսել բազմազավակությունը և ուժեղացնել ընտանիքը, մայրության և մանկության պաշտպանությունը:*

*«Փառաբանենք մայր-կնոջը, որի սերը սահման չունի, որի կրծքով սնված է ամբողջ աշխարհը— գրել է Մաքսիմ Գորկին:*

*— Մարդու համար գեղեցիկ ամեն ինչ արևի ճառագայթներից մինչև մոր կաթը— ահա թե ինչն է հագեցնում մեզ դեպի կյանքը ցուցաբերվող սիրով... Առանց արևի ծաղիկները չեն ծաղկում, առանց սիրո՝ երջանկություն չկա, առանց կնոջ սեր չկա...»:*

*Սովետական կառավարությունը փառաբանում է մայր-կնոջը: ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագրով այսուհետև պետական նպաստներ են տրվելու երկուսից ավելի երեխա ունեցող բազմազավակ մայրերին՝ երրորդ երեխան ծնվելիս և ամեն մի հաջորդ երեխա ծնվելիս: Ընդարձակվում է մանկապարտեզների և մանկահրապարակների թիվը. Երկարաձգվում են մայր-կանանց տրվող ֆիզիոլոգիական արձակուրդի օրերը:*

Հսկայական ուժ է պարփակված մայրության մեջ, նրանք արժանի են մեծարանքի՝ շքանշանների ու «Հերոսուհի մայր» պատվավոր կոչման:

Պատերազմի տարիներին հոգատարությամբ են շրջապատվել մեր ռեսպուբլիկայի երեխաները: Մայր-կանանց համար ստեղծվել են անհրաժեշտ պայմաններ իրենց երեխաներին պահպանելու և աճեցնելու: Պետությունն ամեն տարի տասնյակ միլիոն ռուբլի է տրամադրում բազմազավակ մայրերին, որպեսզի նրանք և՛ աշխատեն, և՛ հանգստանան, և միաժամանակ առողջ ու առույգ երեխաներ դաստիարակեն: Միայն 1944 թվի առաջին կիսամյակում մեր ռեսպուբլիկայի բազմազավակ մայրերին տրվել է տասը միլիոն 793 հազար ռուբլի նպաստ: Սպիտակի շրջանի բազմազավակ մայրերը ստացել են 503 հազար ռուբլի, Սիսիանինը՝ 478 հազար ռուբլի, Աշտարակինը՝ 479 հազար ռուբլի, Երևանինը՝ 416 հազար ռուբլի: Երևան քաղաքի բնակիչներ Հայաստան Կարապետյանը և Խալաթ Աթայանը բազմազավակության համար պետությունից ստացել են 32.000-ական ռուբ-



լի նպաստ, իսկ Սրբուհի Մկրտչյանը և Բերսաբե Ղարիբյանը 22.000-ական ռուբլի նպաստ:

Երևանի Կոնսերվի գործարանի բանվորուհի Եսթեր Մակարյանը ողջունելով ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագիրը, շնորհակալության առաջին խոսքերն ուղղեց մեր հայր Ստալինին:

— Ես ունեմ յոթ երեխա,— ասում է Մակարյանը,— դրանք իմ հպարտությունն են, երջանկությունը, իմ ուրախության աղբյուրը: Մեծ որդիս երկրորդ տարին է գտնվում է ռազմաճակատում: Նա գերմանական զավթիչների դեմ մղվող մարտերում շատ անգամ է աչքի ընկել իր սխրագործություններով: Ոգևորված Կարմիր Բանակի հաջողություններով և իմ ճակատային որդու նամակներով, ես որպես բանվորուհի օրական երկու և ավելի արտադրական նորմա եմ կատարում:

Երևանի Կարի առաջին գործարանի բանվորուհիները անսահման հրճվանքով ընդունեցին Հրամանագիրը:

«Արարատ» գործարանի բանվորուհի Նարաքյա Մարգարյանի մայրը՝ Հայկանուշ

Մարգարյանը աշխատողի հետ ունեցած զրույցի ժամանակ ասաց.

— Ես ունեմ ութ զավակ, որոնց դաստիարակության համար պետությունից ստացել եմ մեծ օգնություն, դրա համար խորապես շնորհակալ եմ մեր հարազատ կառավարությունից:

Յոթ զավակների մայր Սաթենիկ Գասպարյանի մեծ աղջիկն ու տղաներից երկուսը աշխատում են «Արարատ» գործարանում, նրանք փոխարինել են ռազմաճակատում զոհված իրենց հորը:

Ո՞րտեղ, ո՞ր երկրում կարող է պետությունը այդպիսի հոգատարություն ցուցաբերել մոր և մանկան մասին: Որտե՞ղ, ո՞ր երկրում պետությունը կարող է դաժան պատերազմի օրերին այդպիսի հսկայական միջոցներ հատկացնել հղի կանանց, բազմազավակ և միայնակ մայրերին օգնություն ցույց տալու համար: Ո՛չ մի տեղ, միայն սովետական երկրում, որտեղ երեխաների դաստիարակության գործը պետական կարևորագույն խնդիր է:

Հարյուր հազարավոր դպրոցականներ են



ամառային արձակուրդներին հանգստանալու գնացել պիոներական ճամբարներ, մանկական առողջարաններ և սանատորիաներ: Նրանք ամառը լավ կհանգստանան և կկազդուրվեն: Նրանց մեծ մասը ճակատայինների երեխաներ են:

Խ. Բ.

---

# ՊԱՏԱՍԽԱՆՈՒՄ ԵՆՔ ՄԵՐ ԸՆԹԵՐՑՈՂ-ՆԵՐԻ ՀԱՐՑԵՐԻՆ

## ՍԱԼՈՒՏ

ԸՆԿ. Գ. ՁՈՒԼՈՅԱՆԻՆ
(Երևանի մեխանիկական գործարան)

Սալուտ (*սալյուտ*) *բառը ծագում է լատիներեն* salutatio *բառից և նշանակում է հանդիսավոր ողջույն, պատիվ տալը։*

*Սալուտ տալիս էին զենքով։ Սալուտ կարելի է կոչել նաև ողջույնի այն ձևը, երբ ձեռքը բարձրացնում են դեպի գլխարկի շքոցիկը կամ հրացանով պատիվ են առնում։*

*Ավելի հանդիսավոր սալուտ տրվում է դրոշով. օրինակ, զորամասերն այդպես ողջունում են պետության ղեկավարին։*

*Ռուսական զորքերը իրենց զորավարներին ողջունում էին նրանց առաջ մինչև գետին խոնարհելով կռվում գրաված թշնամու դրոշները։ Ռուսական սալուտի սիրված ձևն է կրակոցով ողջունելը, որ*



*գործադրվում է առանձնապես աչքի ընկնող դեպքերում։ Հին Ռուսիայում այդ կրակոցները սովորաբար զուգորդվում էին զանգերի ղողանջի հետ։ Մոսկվան այդպես է դիմավորել Դմիտրի Դոնսկոյին և նրա զորքերին, երբ նրանք վերադառնում էին Կուլիկովյան դաշտում թաթարների դեմ տարած հաղթանակից հետո։ Մոսկվայում այդպես է նշվել Կազանի գրավումը և Իվան 4-րդի զորքերի հաղթանակը լիվոնյան գերմանացիների դեմ։ Թնդանոթների որոտով և զանգերի ղողանջով է պատվել Մոսկվան Սկոպին-Շույսկուն, որը ջախջախել էր ինքնակոչ Դմիտրիին և լեհերին։ Նույն պատիվն է տրվել Մինինին և Պոժարսկուն, որոնք Ռուսիան ազատագրել էին լեհական զավթիչներից։*

*Պետրոս 1-ը հրացանային սալուտները մտցրեց որպես պարտադիր մաս հաղթանակների առթիվ կազմակերպվող հանդեսների։ Ծանր հրետանու և հրանոթների համազարկով սալուտ տրվեց, երբ զորքերը հանդիսավոր կերպով վերադառնում էին Մոսկվա Ազովի արշավանքից։ Հրետանային և հրացանային սալուտով են նշվել Լեսնայի*

և Պոլտավայի, Գանգուտի և Գրենգամի մոտ տարած հաղթանակները։

1710 թվից սկսեցին կարգավորվել ծովային սալյուտները՝ որպես նավերի ողջույն, «շնորհավորանք թնդանոթներով»։ Կարգ էր սահմանվել, որ բերդը նավատորմի հրամանատար ադմիրալին ողջունում է յոթ կրակոցով, իսկ մնացած ֆլագմաններին՝ հինգ կրակոցով։ Դրոշակակիր նավերը բերդին պատասխանում էին նույն թվով, այն է՝ հինգ կրակոցով։ Օտարերկրյա նավերի հետ սալյուտների փոխանակումը կարգավորվում էր միջազգային տրակտատների հատուկ կետերով։

Սալյուտների տրադիցիան պահպանվել է նաև Հոկտեմբերյան Սոցիալիստական մեծ ռևոլյուցիայից հետո։ Այսպես օրինակ, սալյուտներ տրվել են Կարմիր հրապարակում տեղի ունեցող զորահանդեսների ժամանակ։

Երեկոյան և գիշերային սալյուտները համարյա միշտ զուգորդվել են հրավառության հետ։

Հայրենական սալյուտը որպես արիության, հերոսության ու վարպետության խորհրդանիշ, որպես հայրենիքի ողջույն մեր հաղթական զորքերի հասցեին, որոնք



սովետական գրոհները պսակել են անթառամ փառքով, սահմանվեց Գերագույն Գլխավոր Հրամանատարի 1943 թ. օգոստոսի 5-ի հրամանով ի պատիվ Օրյոլի ու Բելգորոդի տրվեց 120 հրանոթի 12 համազարկով։

Սալյուտի կարգը ինչպես առաջ, այնպես էլ այժմ յուրաքանչյուր դեպքի համար սահմանվում է առանձին։ Աչքի ընկնող դեպքերում, հաղթանակի քաղաքական և ստրատեգիական նշանակության համեմատ, հրանոթների ու համազարկերի թիվը ավելանում է։

Թշնամու դեմ հաղթանակ տարած զորքերին հրետանային սալյուտով ողջունելու փառապանծ տրադիցիան մեր օրերում դարձել է Կարմիր Բանակի մարտիկների ձեռք բերած մարտական հաջողությունների նկատմամբ ժողովրդական սիրո, առաջնորդի բարձր գնահատականի արտահայտություն։ Այն սալյուտները, որոնցով հայրենիքի մայրաքաղաքը, ընկեր Ստալինի հրամանով, ողջունում է Կարմիր Բանակի փառապանծ հերոսներին, վկայում է Կարմիր Բանակի ռազմական վարպետության աճումը, նրա նորանոր հաջողությունները, որոնք մոտեց-

*նում են վերջնական հաղթանակի ժամը գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ։*

*1944 թ. մայիսի 1-ի համաշխարհային տոնի օրը Գերագույն Գլխավոր Հրամանատար, Սովետական Միության Մարշալ ընկեր Ստալինի հրամանով սալյուտ տրվեց Մոսկվայում, Լենինգրադում, Գոմելում, Կիևում, Խարկովում, Ռոստովում, Թբիլիսիում, Սիմֆերոպոլում, Օդեսայում հրետանային քսան համազարկով ռազմաճակատում Կարմիր Բանակի տարած պատմական հաղթանակների պատվին և ի նշանավորումն Սովետական Միության Բանվորների, կոլխոզնիկների և ինտելիգենցիայի մեծ հաջողությունների՝ թիկունքում։*

---



## ՆՇԱՆԱՎՈՐ ԶՈՐԱՎԱՐԻ ՄՏՔԵՐԸ

### ՍՈՒՎՈՐՈՎՆ ԱՍՈՒՄ ԷՐ

— Որքան ավելի մոտ թշնամուն, այնքան ավելի լավ։

—Առաջինները վերջիններին չպիտի սպասեն։

— Ամեն մի հապաղում ուժեղացնում է թշնամուն։

— Դանդաղկոտությունը բազմապատկում է թշնամու ուժերը, արագությունը և հանկարծակիությունը քայքայում և հարվածում են նրան։

— Պատերազմում արա այն, ինչ որ թշնամին համարում է անհնարին։

— Արշավում՝ արագություն, գրոհի ժամանակ՝ սրընթացություն։

— Իմ արագությունը գիտե միայն մեկ մարշ՝ առաջ։

— Եթե ասված է՝ առաջ, ապա ես չգիտեմ թե ինչ բան է հոգնածությունը, ցուրտը և քաղցը։

— Առա՛ջ: Ամոթ ու մահ նրան, ով ետ կմնա:

— Թշնամին փախչում է՝ նրա թնդանոթները դարձրու նրա դեմ:

— Փախչող թշնամուն ոչնչացնում է միայն հետապնդումը:

— Հետապնդել թշնամուն գիշեր ու ցերեկ, մինչև որ նա ոչնչացվի:

— Ռուսները պրուսացիներին միշտ հարվածել են:

— Մենք ռուս ենք, մենք ամեն բան կըհաղթահարենք:

---



## ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ԻՆՔՆԱԹԻՌ-ԱՐԿԸ

Գերմանական ինքնաթիռ-արկը գործողության էֆեկտիվությամբ համապատասխան է 1.000 կիլոգրամ քաշ ունեցող ֆուգասային ավիացիոն ռումբին: Իր կոնստրուկցիայով դա փոքրիկ ռեակտիվ ինքնաթիռ է, որի թռիչքը ուղղագիծ մարշրուտով ավտոմատիկորեն կառավարելու սարք ունի:

Ինքնաթիռ-արկը 8 մետր երկարություն ունի: Նրա թևերի տարածությունը 5 մետր է: Կորպուսի տրամագիծը, ամենալայն մասում, մոտ 80 սանտիմետր է: Վառելանյութի պաշարը նրան թույլ է տալիս թռչելու 200-ից մինչև 250 կիլոմետր: Արկի թռիչքի արագությունը կազմում է մեկ ժամում 500-ից մինչև 560 կիլոմետր:

Ինքնաթիռ-արկի հիմնական թերությունն այն է, որ նա հարմարեցված չէ նպատակակետերին նշանոցային հարված հասցնելու, դրա համար էլ այն չի կարելի համարել ժամանակակից ռազմա-գիտական մտքի նվաճում:

Ինքնաթիռ-արկը թռչում է ուղղագիծ, գրեթե միշտ անփոփոխ արագությամբ, ոչ մեծ բարձրությամբ, և չի կարող մանևրել օդում: Գիշեր ժամանակ նա իր հետևից թողնում է վառվող գազերի հետք, իսկ ցերեկը՝ ծխի հետք: Այդ բոլորը հեշտացնում է նրա դեմ պայքարելը: Գերմանական արկը կարելի է ոչնչացնել ժամանակակից բոլոր ակտիվ հակաօդային միջոցներով՝ կործանիչներով, զենիթային կրակով, առանձնապես գնդացիրներով, ինչպես նաև ավտոմատիկ թնդանոթներով և արգելափակիչ աէրոստատների բարձրացրած ցանցերի օգնությամբ:

---



## ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԽՐՈՆԻԿԱ

★ Հուլիսի 12-ին Բերիայի շրջանի Շինդավիթ գյուղի կոլտնտեսականների համար կազմակերպվեց ՀԿ(բ)Պ Երքաղկոմի ագիտբրիգադայի 2-րդ հանդիպումը: Հանդիպմանը մասնակցում էին ավելի քան 300 մարդ: ՀԿ(բ)Պ Երքաղկոմի դասախոս ընկ. Ա. Խուդոյանը զեկուցեց Կարմիր Բանակի պատմական մեծ հաղթանակների մասին:

Երևանի Ձեթ-օճառ գործարանի բանվորական գեղարվեստական ինքնագործ երգի ու պարի անսամբլը տվեց հետաքրքիր համերգ: Ագիտբրիգադայի ելույթը ջերմ ընդունելության գտավ կոլտնտեսականների կողմից:

★ Օգոստոսի 4-ին «Կարմիր Հացագործ» արտելի ակումբում տեղի ունեցավ արտելի բանվորների, ծառայողների և ՀԿ(բ)Պ Երքաղկոմի ագիտբրիգադայի հանդիպումը: Երքաղկոմի դասախոս ընկ. Հ. Գասպարյանը զեկուցեց Հայրենական պատերազմի ընթացիկ մոմենտի և դաշնակիցնե-

րի բանակների պատերազմական գործողու-
թյունների մասին:

Զեկուցումից հետո պոետ Ա. Վշտունին կարդաց իր հայրենասիրական բանաստեղ-ծությունները:

★ Կոլխոզնիկների կուլտուրական սպասարկումը լավ է կազմակերպված Ալավերդու շրջանի գյուղերում: Ուզունլար գյուղի ագիտբրիգադան հաճախ դաշտում հանդիպումներ է ունենում կոլխոզնիկների հետ:

Ծաթեր գյուղի կոլխոզի նախագահ ընկ. Դ. Պողոսյանը և պարտկազմակերպության քարտուղար ընկ. Մ. Մուքիասյանը օրինակելի ձևով են կազմակերպել օրվա թերթերի բարձրաձայն ընթերցանությունը դաշտում և կալերում աշխատող կոլխոզնիկների համար:

---



Պատասխանատու խմբագիր՝
Ս. ԱՐԵՇՅԱՆ

ՎՖ 01094 պատվեր 726 տիրաժ 5000

ՀՍՍՌ Ժողկոմսովետին կից թերթերի և ամսագրերի
տպարան. Երևան, 1944 թ